Լեման, Կ. Ֆ. (1897) «Խալդեր» անունը. Ազգագրական հանդէս, № 2. pp. 300-306.

# „ԽԱԼԴԵՐ" ԱՆՈՒՆԸ *)

Բերլինի համալսարանի գիտնական Լեմանը պատմական և աշխարհագրական փաստերի հիման վրայ ապացուցանում է, որ Խալդեր անունով ազգը յունաց պատմիչների յիշած հիւսիսային խալդիացիների ազգն է։ Խալդերի իշխաններին են պատկանում մեզ հասած նախահայկական սեպաձև արձանագրութիւնները։ Այդ ազգի իսկական անունը Խալդեր է։ Գերմանացի նշանաւոր գիտնական Եանսընը անբաւարար է գտնում Լեմանի կարծիքն այդ ազգի անուան մասին **)։

Ամենից առաջ Խալդերի թագաւորները հին դարերի պատմութեան մէջ նշանաւոր են նրանով, որ իրանց հպատակ հասարակութեան բարեկեցութեան համար ծառայող բազմաթիւ հիմնարկութիւններ են շինել տուել։ Դրանց տէրութիւնը թէոկրատիական հիմք ունէր։ Խալդերի կամ Նախահայերի գլխաւոր չաստուածը Խալդիս էր կոչւում, իսկ միւս երկրորդական չաստուածները «Խալդիի—չաստուածներ» կամ «Խալդիի—որդիներ»։ Այդ անունը բովանդակում է իւր մէջ Խալդերի բոլոր չաստուածները։ Բայց միևնոյն ժամանակ նախահայկական ազգի այն բոլոր անդամները, որոնք Խալդիս գլխաւոր չաստուծուն էին երկրպագում, կոչւում էին նոյնպէս Խալդիսի որդիներ կամ Խալդեր։ Խալդերի թագաւորները Խալդիսին պատուելու համար էին կատարում իրենց բոլոր արշաւանքները և տիրապետութիւնները. Նրանք Խալդիսի պատուի համար էին շինել տալիս հասարակութեան բարեկեցութեան համար ծառայող բոլոր շինութիւն-

*) Բերլինի համալսարանի ուսուցչապետ գիտնական Լեմանը, որ Հայաստանում յայտնի է Խալդերի կամ Նախահայերի պատմութեան մասին իւր մի շարք գիտական ուսումնասիրութիւններով, Բերլինում Բաստեան, Վիրխով և Ֆոս նշանաւոր գիտնականների խմբագրութեամբ լոյս տեսնող „Zeitschrift für Fthnologie" մարդաբանական, ցեղագրական և հնագիտական նշանաւոր հանդէսի այս տարուայ համարներից մէկում մի ուսումնասիրութիւն էլ է հրատարակել, որով գիտնական հեղինակը փորձում է լուսաբանել Խալդերի կամ Նախահայերի պատմական անունը։ Մեր շարադրութեան նպատակն է այդ ուսումնասիրութեան էական կէտերի հետ հայ ընթերցողներին ծանօթացնել։

**) Qrundlagen für eine Ent zifferung der (hatischen oder) cilicischen (?) Jns hriften.

ների։ Խալդերի կամ Նախահայկական ազգի գլխավոր մայրաքաղաքը Տուշպա—Վանն էր, որտեղ և գտնվում էր Խալդիս աստծու տաճարը. դրա համար այդ մայրաքաղաքը կոչվում էր նույնպես Խալդիի—քաղաք կամ Խալդինա։ Այն ամբողջ տարածությունը, որի վրա ապրում էին խալդերը, կոչվում էր Խալդիա, այսինքն «Խալդիի երկիր»։

Հնագետներից ոմանք կարծում են, որ նախահայկական արձանագրություններում պատահող Խալդինի, այսինքն Խալդիին պատկանողներ անունը Խալդերի աստվածներին է վերաբերում։ Հին դարերի պատմական տեղեկություններից ոմանք մեզ օգնում են այդ մութ անունը բացատրելու։

Յոյն պատմիչները Պոնտոսյան երկրների և Հայաստանի մասին խոսելու ժամանակ մատնացույց են անում նույնպես Քաղդիացի անունով մի ազգի վրա, որ մեզ հարավային Բաբելոնում ապրող համանուն ազգն է հիշեցնում։ Բացի դրանից հարավային Բաբելոնումն էր ապրում և համանուն հոգևորական դասակարգը, որ այդ երկրի պատմության մեջ նշանավոր դեր է խաղացել։ Իսկ մի քանի ուրիշ աղբյուրներ էլ աշխարհագրական այդ միևնույն տեղում Խալդիա անունով մի երկիր են հիշում, որի իւրաքանչիւր բնակիչը Խալդոս կամ Խալդիս էր կոչվում։ Սուիդասը Խալդինէ անունով մի քաղաքի մասին տեղեկություններ է տալիս։

Սեպաձև արձանագրությունները Խալդերի երկիրը, բնակիչներն և մայրաքաղաքը դրանց գլխավոր աստծու անունով են կոչում և ինչպես տեսանք, դրանք համապատասխանում են Յոյն պատմիչների հաղորդած տեղեկություններին։

Սրանից պարզ երևում է, որ հիւսիսային այդ լեռնական ազգը, որ Ասորեստանցիներն Ուրարտիներ, իսկ Հերոդոտն Ալարոդներ են կոչում, միևնույն ժամանակ Խալդեր էլ էր կոչվում։ Այդ միևնույն ազգը կլասիքական գրականության մեջ Քաղդիացի է կոչվում, որ վերոհիշյալ անունի միայն փոփոխված ձևն է։ Հարավային Բաբելոնի համանուն ազգի նախնական անունը Kashdu կամ Kashdayu էր, բայց հետո այդ անուան sh-ը l-ի փոխելով, ծագել է Kaldu կամ Kaldayu անունը, որ Յոյների տված անունին է համապատասխանում։ Այդ միևնույն կլասիքական հեղինակների աշխարհագրական տեղեկությունների համեմատ Խալդերի բնակավայրը պէտք է Վանայ ծովի հիւսիս արևմտյան լեռների և Սև ծովի մէջ ընկած տարածութեան մէջ փնտռել, այսինքն մի այնպիսի երկրում, որ նույնպես Խալդիական տէրութեանն է պատկանել և դրա քաղաքական կենդրոնից հեռու էր ընկած։ 7-րդ դարու վերջում և 6-րդի սկզբում դրանց բնակավայրի փոփոխությունը մեզ չպէտք է զարմացնի։ Ինչ-

պէս երեւում է, այդ ժամանակից են ծագում լուռնական նախնական տեղեկութիւնները։ Շատ հաւանական է, որ այդ ժամանակ հայերը կիմմերացիների հետ գաղթեցին իրենց պատմական հայրենիքը։ Բայց Քսենեֆոնի վկայութեան համեմատ Խալդերի մի մասը Հայերի հետ միասին մնաց իւր նախնական բնակավայրում, այսինքն Վանայ ծովի շրջականերում։ Քսենեֆոնի կարծիքով Խարդերն ինքնապաշտպան, և ազատութեան սիրով տոգորուած մի ազգ են։ Նա իւր աշխատութեան մէջ նկարագրում է այն թշնամութիւնը, որին ենթարկուեցին 10,000 Յոյներն իրանց հայրենիքը վերադառնալու ժամանակ։ Խալդերի այս նշանաւոր յատկութեանը պէտք է վերագրել այն պատմական երեւոյթի էական պատճառը, որ դրանք Վանայ տէրութեան կործանումից յետոյ դեռ դարեր շարունակ զանազան երկրներում կարողացան իրանց ազգայնութիւնը մաքուր և անկեղծ պահպանել։ Շատ հաւանական է ենթադրել, որ Խալդերի կամ Նախահայերի մնացորդները դեռ այսօր էլ ապրում են Հայաստանի կամ Կովկասի լեռներում։ Յուսալի է, որ Խալդիական սեպաձև արձանագրութիւններն ապագայում այդ նշանաւոր ազգի պատմութիւնն աւելի կը լուսաբանեն։ Գիտնական Լեմանը զօրեղ և համոզեցուցիչ փաստերով հակաճառում է ուսուցչապետ Նանսընի ոչ այնքան հիմնաւոր ենթադրութիւնների դէմ։ Ցիչենք նոյնպէս, որ Ա. ֆոն Գութշմիդ, Սէյս և Հոմմէլ գիտնականներն էլ Լեմանի կարծիքն են ունեցել, բայց դժբաղդաբար նրանք իրենց ժամանակ պատմական շատ փաստեր չեն ունեցել։

Նախահայկական սեպաձև արձանագրութիւնների մէջ մեզ մինչև այժմ Հալդինի և Հալդինինի կողնակի ձևերն էին յայտնի և դրանք կարող էին Խալդեր կամ Խալդի—չաստուածներ նշանակել. բայց բարեբաղդաբար գիտնական Բելքը մի ուրիշ արձանագրութիւն էլ է գտել, որի մէջ խալդիս անունն եզակի մտքով է գործածուած և նշանակում է ոչ թէ համանուն չաստուածը, այլ այդ ազգի իւրաքանչիւր անհատը։ Այդ Գիւղակում Մենուասի հետեւեալ արձանագրութիւնն է.

Բիտու Ռուսու սի—դի—իս—տու—նի
Պալատն է նա (Մենուասը) վերանորոգել
բա—ա—դու—ու—սի—ի—է
որ աւերուած էր
տե—րու—նի (իլու) Հալ—դի—ի
է նա շինել Խալդիի համար
է—տա—րի—ի—տի—ի—նի
է Թարիս կոչուած.

Բայց որովհետև մի որև է չաստուծոյ համար տաճար են շինում և ոչ թէ պալատ, ուրեմն պարզ է, որ Խալդիսն ոչ թէ համանուն

չաստուածն է, այլ Խալդեր ազգի իւրաքանչիւր անդամի համար տուած կոչումը։ Որեմն Խալդիական լեզուով Խալդերի գլխաւոր չաստուածն և այդ ազգի իւրաքանչիւր անդամը միևնոյն անունն են կրում, մի երևոյթ, որ ոչ եզակի և ոչ էլ անբացատրելի է։ Քասսիդների լեզուով էլ Քաշշու բառը նշանակում է թէ Քասսիդ և թէ միևնոյն ժամանակ դրանց չաստուածը։ Լեման գիտնականն իւր այս շատ հաւանական հիմքերով հերքել է Եանսընի հակաճառութիւնները «Խալդեր և Քասսիդները» վերնագրով աշխատութեան մէջ, որ լոյս է տեսել գերմանական արևելագիտական ընկերութեան հանդէսում։ Շատ հաւանական է, որ Ուրարտեների կամ Խալդերի նախնական բնակավայրը Վանայ ծովի հարաւային կողմումն էր գտնւում, այսինքն մօտաւորապէս այնտեղ, որտեղ Սալմանասար Բ-ը Հուպուսկիայից վերադառնալով նրանց առաջին անգամ պատահեց, կամ հէնց ուղիղ այնտեղ, որտեղ Թիգլաթ-Պալասէն Ա-ը Ուրատինա (խալդերէն նշանակում է Ուրարտի քաղաքը) քաղաքին հանդիպեց։ Հետաքրքիր է նոյնպէս յիշել, որ Հայ պատմիչներն իրենց աշխատութիւնների մէջ Քալդիք և Քաղդիացիք անունները միևնոյն ձևով չեն գործածում, այլ առաջինը Խալդերի, իսկ երկրորդ՝ Քաղդիացիների համար։ Այդ պատմիչների աշխատութիւնների ժամանակակից թարգմանիչները միայն այդ երկու տարբեր անունների մէջ խտրութիւն չեն դնում։

Որպէս վերև յիշեցինք, Քսենեփոնի և ուրիշների կարծիքով Խալդերի մի մասը մինչև Նախաքրիստոնէական 5-րդ դարու վերջն իւր սկզբնական բնակավայրում—Վանայ ծովի շրջականներումն է մնացել։ «Օրոնտասի և Արտուխասի մարդիկ» Վանայ ծովի հարաւային կողմում պատահում են 10,000 Յոյներին։ Դրանք Հայեր, Մարատանցիներ և Խալդիացիներ էին։ Այդ Խալդիացիներն ազատութիւն սիրող մի ժողովուրդ էին։ Որեմն Վանայ ծովի հարաւային կողմում, Նախահայկական—ուրարտական տէրութեան կենդրոնից ոչ հեռու, Քսենեփոնը պատահում է այնպիսի մարդկանց, որոնց նա Խալդիացիք է կոչում։ Մի քանի ուրիշ պատմական աղբիւրներից գիտենք, որ Տրապիզոնի մօտ մի ժողովուրդ էր ապրում, որ նոյնպէս Խալդիացիք էին կոչւում։ Բայց ակնյայտնի է, որ Խալդիացիք անունը մի քիչ փոփոխուած է և պէտք է Խալդոս լինի, որովհետև այն տեղերը, որտեղ մենք Խալդիացիներ ենք գտնում, օր. Տրապիզոնի և Վանայ ծովի շրջականներում, դրանք պատկանում են Նախահայկական—ուրարտական տէրութեանը։ Այդ Ուրարդիներն իրանց արձանագրութիւնների մէջ Խալդեր են կոչւում։ Երբ հայերն իրենց սկզբնական հայրենիքից գաղթելով Հայաստան մտան, այն ժամանակ Խալդերը ստիպուած էին դրանցից խուսափել։ Իբրև մի զօրեղ և ազատասէր

ազգ, Խալդերը չխոնարհուեցին Մարաստանի կամ Պարսկաստանի առջև, այլ իրենց ազգայնութիւնն և անկախութիւնն երկրի անանցանելի և լեռնային մասերում հաստատ պահպանեցին։ Ըստ Անաբազիսի նրանք երբեմն երբեմն Պարսից թագաւորների վարձկան զինուորներն էին դառնում։ Այդպիսի զինուորները շատ անգամ այնպիսի տեղերում էին ծառայում, որոնք իրանց հայրենիքից շատ հեռու էին։ Կիւրոպեդիա աշխատութիւնը մեզ նոյնպէս հաղորդում է, որ Խալդիացիք մի պատերազմասէր ժողովուրդ են և իբրև աղքատ մարդիկ՝ շատ անգամ զանազան տէրութիւնների վարձկան զինուորներն են լինում։ Նրանք այդ արհեստին են պարապում, որովհետև իրենց հայրենիքը լեռնոտ է և դրա համար նրանք այնտեղ չեն կարող երկրագործութեամբ պարապել։ Կիւրոպեդիան պատմական տեղեկութիւններով և նկարագրութիւններով հիւսուած մի րոման է։ Հեղինակն այդ աշխատութիւնը գրելու ժամանակ այնպիսի աղբիւրներից է օգտուել, որոնք մեծ մասամբ մեզ չեն հասել. մանաւանդ իրական և պատմական է կիւրոպեդիա աշխատութեան այն մասը, որ վերաբերում է հայկական դրութիւնների նկարագրութեան։ Այդտեղ նկարագրուած է Հայերի յարաբերութիւնը դէպի Խալդիացիները։ Կիւրոսը Մարաստանի թագաւոր Կիաքսարին օգնում է Հայաստանի Տիգրան թագաւորի դէմ, որ առաջուայ նման մերժել էր Կիաքսարին հարկ և զօրք տալու։ Կիւրոսը կամենում է Հայաստանն իւր իշխանութեանն ենթարկել։ Նա իւր նպատակին հասնելու համար օգտուում է Հայաստանի ներսում՝ Հայերի և Խալդիացիների մէջ ծագած թշնամութիւնից։ Կիւրոսը Տիգրանին մի բարձրութիւնից այն սարերն է ցոյց տալիս, որտեղից Խալդիացիներն իրենց աւազակային արշաւանքներն են սկսում և մի անգամ պարսկական-մարական զօրքերի առաջնորդներին ասում է. «Եթէ մենք կարողանայինք այն լեռները գրաւել և այնտեղ պահապան զօրք թողնել, այն ժամանակ մենք թէ Հայերից և թէ Խալդիացիներից երկիւղ չէինք ունենալ»։ Նրանք Հայերի օգնութեամբ պաշարում են այդ բարձրութիւնները։ Կիւրոպեդիայի այդ մասում նկարագրուած է և Խալդիացիների պատերազմելու ձևը։ Կիւրոսն ուզում է Խալդիացիներին համոզել, որ իւր դիտաւորութիւնը չէ եղել դրանց ոչնչացնել, այլ Հայերի և Խալդիացիների մէջ խաղաղութիւնը հաստատել։ Կիւրոսի միջնորդութեամբ Հայերի և Խալդիացիների մէջ դաշնակցութիւն է կայանում, որով նրանք փոխադարձաբար պայմանաւորւում են ազատ և անկախ ապրելու։ Քսենեֆոնն աւելացնում է, որ իւր ժամանակ այդ դաշնակցութիւնը Հայերի և Խալդիացիների մէջ դեռ ևս գոյութիւն ունէր։

Խալդիացիներն այդ դաշնակցութիւնը կապելուց յետոյ Կիւրո-

սին համոզում են, որ իրենց մէջ այնպիսի մարդիկ էլ կան, որոնք խաղաղ աշխատելու անընդունակ են և միայն սովոր են կողոպտել, պատերազմել և իբրև վարձկան զինուորներ ծառայել։ Կիւրոսը դրանց իր վարձկան զինուորներ է դարձնում։

Քսենեփոնը շատ լաւ էր ճանաչում Քարդուխներին, այժմեայ Քրդերի նախահայրերին, և դրանց մասին իր աշխատութեան մէջ մեզ մանրամասն տեղեկութիւններ է տալիս։ Հետևապէս չենք կարող ենթադրել, որ Քսենեփոնը Խալդիացի անուան տակ Քրդերի վրայ է մատնացոյց անում։ Դրա համար մեզ մնում է միայն ընդունել, որ Խալդիացիները Հայաստանի Նախահայերը կամ Ուրարտիներն են։ Բնական է, որ հնդո-գերմանական Հայերն իրանց պատմական հայրենիքը գաղթելով այնտեղ հանգիստ և խաղաղ կեանք վարելու համար, ստիպուած էին Խալդիացիների կամ Ուրարտիների հետ դաշնակցութիւն կապել, որովհետև Նախահայկական այդ վայրենի և աւազակային ժողովուրդը Հայերին միշտ վտանգ էր սպառնում և նրանց հանգստութիւնը խանգարում։ Քսենեփոնի տեսլով վերոյիշեալ դաշնակցութեան շնորհիւ այդ երկու տարբեր ազգերի մէջ խաղաղութիւնը վերահաստատուեց։ Շատ հաւանական է, որ այդ ժամանակից են սկսել Հայաստանի այդ երկու, միմեանցից տարբեր ազգերն իրար հետ խառնուել և այսօրուայ Հայոց ազգը կազմել։ Այդ բանին իբրև ապացոյց կարող է Հայոց լեզուն ծառայել, որ իր մէջ բացի հնդոգերմանական բառերից, ամփոփում է և բազմաթիւ տարբեր ելեմէնտներ, որոնք կովկասեան մի լեզուի, ուրեմն Ուրարտիների լեզուին են յատուկ։ Քսենեփոնի յիշած այդ ազգաբնակութիւնը Վանի ուրարտական տէրութեան մէջ էր ապրում։ Քսենեփոնի յիշած Խալդիացիները, Նախահայկական տիրապետող ազգաբնակութեան յաջորդներն են։ Հեկատէոս և Սոֆոկլէս պատմիչներն էլ են Պոնտոսեան Խալդիացիների մասին տեղեկութիւններ տալիս։ Դրանք կոչւում են Խալդեր, իսկ դրանց երկիրը (այսօր էլ) Խալդիա։ Վերոյիշեալ բոլոր փաստերից երևում է, որ Յոյն հեղինակների յիշած պոնտոսեան Խալդիացիները Նախահայկական Խալդերի սերունդներն են։

Հնդկագերմանական հայերի Հայաստան գաղթելուց յետոյ, Խալդերը Հայաստանի մի քանի լեռնային գաւառներում դեռ շատ երկար ժամանակ կարողացան իրենց ազգայնութիւնը անկեղծ պահպանել։ Ուրեմն պէտք է յուսալ, որ դրանց մնացորդներն ոչ միայն ժամանակակից Խալդիայի արքեպիսկոպոսութեան մէջ են գտնւում, այլ և Հայաստանի ուրիշ շատ տեղերում։

Վանայ ծովի հարաւ-արևելեան կողմում գտնւող լեռներից մէկը

կոչւում է Խալդի-Դաղ, որ Տիգրիսի ձախ ափումն է ընկած: Քսենոֆոնը Յունաստան վերադառնալու ժամանակ այդ միևնոյն տեղում պատահեց Խալդերին: Գիտնական Բելքը կարծում է, որ այնտեղ այսօր էլ կարող են Խալդերի մնացորդներ լինել: Բացի դրանից Բելքը մատնացոյց է անում և այն երևոյթի վրայ, որ այսօրուայ Տրապիզոնի փաշալիքի մի գաւառը Խալդեր կամ Խելդեր է կոչւում: Կիբերտի կարծիքով Խալդիա անունը վերաբերում է Տրապիզոնի ամբողջ վիլայէթին: Բացի դրանից Հայաստանի մի քանի մասերը Քալդիր (ան) և Ջալդիր (ան) անունները են կրում, որոնցից մենք մեծ հաւանականութեամբ կարող ենք եզրակացնել, որ այդ մասերում հին Խալդերն են ապրել և դրանց մնացորդներն էլ մինչև այսօր գուցէ գոյութիւն ունին: Կիբերտի կարծիքով Կաղզուանի լեռնային այն մասը, որ ընկած է Արաքսի երկու կողմերում և Արփաչայի արևմտեան կողմում, կոչւում է Ջալդիւրան: Ղարս քաղաքի հիւսիսային կողմում գտնուած գաւառը Չիւլդիւր (ՉԸԼԴԸՐ) է կոչւում: Լեմանի կարծիքով շատ հաւանական է, որ վերոյիշեալ անունները Խալդեր հիմնական ձևից են ծագում: Չիւլդիւր գաւառի լեռնաշղթան Չիւլդիւր-Դաղ է կոչւում և տարածւում է դէպի արևելք, մինչև Չիւլդիւր-գիոլը: Չիւլդիւր-գիոլի հիւսիսային կողմում ընկած տարածութիւնը էլի Չիւլդիւր է կոչւում: Բացի դրանից Նախիջևան և Բայազէտ քաղաքների հարաւային կողմում ընկած տարածութիւնը «Ջալդիրան» անունն է կրում: Վերոյիշեալ բոլոր երկրների անունները մեզ Խալդերի անուններ են յիշեցնում, որոնք, ինչպէս երևւում է, այդ երկրներում իրենց վտանգաւոր գոյութիւնը պահպանել են: Գիտնական Բելքի և միաբան Գալուստ Տէր-Մկրտչեանի շնորհիւ մենք հաստատ գիտենք, որ Բայբուրդի մօտ այժմ Խալդեր անունով մի ազգ է ապրում, որի լեզուն Տաճիկների, Հայերի, Յոյների և Լազերի լեզուներին բոլորովին նման չէ: Մ/աբան Գ. Տէր Մըկրտչեանի ասելով, դրանք ցիկանների նման աղքատ մարդիկ են և պարապում են գուշակութեամբ և հմայութեամբ: Դրանք ապրում են միայն մի քանի գիւղերում: Բաբերդի կողմերում «Խալդեր» անունը հայհոյական անուան տեղ են գործ ածում: Կասկած չկայ, որ դրանք Նախահայերի—Խալդերի մնացորդներն են: Լեմանը վերոյիշեալ հաւանական փաստերով և ենթադրութիւններով հակաճառում է գերմանացի գիտնական Նանսընի ոչ այնքան հիմնաւոր եզրակացութիւնների դէմ:

Լ. Բաբայեան

